# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78։

# ԼԱՅՆՈՐԵՆ ԾԱՎԱԼԵԼ ԱԳԻՏԱՑԻԱՆ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՄԵԾ ԿԱՌՈՒՑՈՒՄՆԵՐԻ ՇՈՒՐՋԸ

Սովետական ժողովուրդը բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ, ընկեր Ստալինի հանճարեղ առաջնորդությամբ վճռում է կոմունիստական հասարակության կառուցման պատմական խնդիրները։ Ամբողջ աշխարհով մեկ, որպես սոցիալիզմի երկրի նոր, փառապանծ հաղթանակի լուր, տարածվեցին սովետական կառավարության պատմական որոշումները կոմունիզմի մեծ կառուցումների՝ Վոլգայի վրա Կույբիշևյան և Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայանների, Գլխավոր Թուրքմենական ջրանցքի, Դնեպրի վրա Կախովկայի հիդրոէլեկտրակայանի, Հարավ-Ուկրաինական ջրանցքի և Հյուսիս-Ղրիմյան ջրանցքի կառուցման մասին։

Սովետական կառավարության պատմական որոշումները հանդիսանում են մեր Հայրենիքի հզորության ու բարգավաճման նկատմամբ, ժողովրդի երջանկության նկատմամբ ստալինյան հոգատարության նոր, վառ արտահայտություն։ Այդ որոշումները ցույց են տալիս Սովետական մեծ Միության անխորտակելի ուժը, նրա խաղաղասիրական քաղաքականությունը։

Կոմունիզմի մեծ կառուցումների մասին կառավարության որոշումներն արդեն գործողության մեջ են։ Վոլգա գետի ափերին արդեն սկսվել են Կույբիշևյան և Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայանների կառուցման աշխատանքները. սկսվել է նաև Կախովկայի հիդրոէլեկտրակայանի, Գլխավոր Թուրքմենական ջրանցքի, Հարավ-Ուկրաինական և Հյուսիս-Ղրիմյան ջրանցքների շինարարությունը։ Այդ մեծ կառուցումներին մասնակցում է ամբողջ երկիրը։ Սովետական կառավարության պատմական որոշումները մեր ժողովրդին համակել են հայրենասիրական չտեսնված խանդավառությամբ և օրինական հպարտությամբ։ Սովետական մարդիկ այդ կառուցումներն անվանելով կոմունիզմի մեծ կառուցումներ, իրենց ժողովներում և մի-



տինգներում միահամուռ պատրաստակամություն են հայտնում մասնակցելու համաժողովրդական այդ վեհ գործին, դառնալու ստալինյան դարաշրջանի հոյակապ կառուցումների ակտիվ մասնակիցներ։

Սովետական ժողովրդի հայրենասիրական այդ մեծ շարժմանը իր ակտիվ մասնակցությունն է հանդես բերում նաև Սովետական Հայաստանի աշխատավորությունը։ Գործարաններում, հանքերում, տրանսպորտում, կոլխոզներում և սովխոզներում աշխատավորները տոգորված են հայրենասիրական մեկ զգացումով՝ իրենց ավանդը մուծել կոմունիզմի մեծ կառուցումների գործում։ Այս օրերին բուռն խանդավառությամբ են աշխատում Երևանի Ավտոդետալ գործարանի բանվորներն ու ինժեներա-տեխնիկական աշխատողները, որոնք արդեն Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայանի շինարարության համար ուղարկել են իրենց արտադրանքի առաջին պարտիան և ստացել ստալինգրադցիների ջերմ շնորհակալությունը։ Աշխարհի մեծագույն հիդրոէլեկտրակայանների շինարարության համար պատվերներ են կատարում էլեկտրամեքենաշինական, Կաբելի գործարանների բանվորներն ու բանվորուհիները։

Նրանք ջանք չեն խնայում օր առաջ կատարելու մեծ կառուցումների պատվերները։

Այս օրերին սովետական կառավարության պատմական որոշումները պրոպագանդելու գործում նշանակալից աշխատանք են կատարում մեր ագիտատորները՝ կոմունիզմի կառուցման ակտիվ մասնակիցները։

Երևանի Ավտոդետալ գործարանում, որտեղ պատրաստվում են կոմունիզմի մեծ կառուցումների շինարարության պատվերները, ագիտատորները բանվորների և բանվորուհիների շրջանում հետաքրքիր, գրավիչ և ուսանելի զրույցներ են անցկացնում ստալինյան նորակառույցների մասին։

Գործիքային ցեխում արդեն մի քանի տարի է ագիտացիոն-մասսայական աշխատանք է կատարում ստախանովական Հ. Նազարյանը։ Ցեխի բանվորների և բանվորուհիների համար սովետական կառավարության որոշումների մասին ունեցած իր զրույցում ագիտատոր Նազարյանը ասաց.

— Այդպիսի վիթխարի կառուցումներ հնարավոր են միայն մեր երկրում, որովհետև



միայն սովետական դյուցազն ժողովուրդը կարող է իրագործել բնության վերափոխման ստալինյան հանճարեղ պլանները։ Պարտիայի և կառավարության որոշումները ստալինյան դարաշրջանի վիթխարի կառուցումների մասին խաղաղության համար մղվող պայքարի մարտիկների ձեռքին մի նոր զենք են պատերազմի հրձիգների դեմ։ Այն ժամանակ, երբ ամերիկա-անգլիական իմպերիալիստները խելացնոր կերպով պատրաստվում են համաշխարհային երրորդ պատերազմին, երբ ամերիկյան ագրեսորները ավերում են Կորեայի քաղաքներն ու գյուղերը, ոմբակոծում խաղաղ բնակչությանը, մեր երկրում, աշխարհի ամենախաղաղասեր երկրում իրագործվում են կոմունիզմի շինարարության վեհ նախագծումները։

Ագիտատոր Հ. Նազարյանը իր զրույցը կապում է գործարանի և ցեխի առջև դրված կոնկրետ խնդիրների հետ։ Նրա ագիտացիոն աշխատանքը օգնում է արտադրողականության բարձրացմանը, մեծ կառուցումների պատվերները ժամկետից շուտ կատարելու գործին։ Ագիտատոր Նազարյանը, արտադրական առաջադրանքները կատարելով 170—200 տոկոսով, անձնական օրինակով

ոգեշնչում է ընկերներին։ Գործարանում նորակառույցների շուրջը հետաքրքիր ագիտացիոն-մասսայական աշխատանք են ծավալում նաև ագիտատորներ Բ. Ավագյանը, Ս. Նազարյանը և ուրիշներ։ Նրանք բոլշևիկյան կրքոտությամբ կատարում են իրենց հանձնարարված գործը։

Այսպես պետք է աշխատեն ագիտատորները բոլոր գործարաններում և ֆաբրիկաներում և առաջին հերթին էլեկտրամեքենաշինական, Կաբելի, Ճշգրիտ չափիչ գործիքների գործարաններում, Ալավերդու և Ղափանի պղնձահանքերում և արտադրական այն բոլոր ձեռնարկություններում, որտեղ կատարվում են մեծ կառուցումների պատվերները։

Սովետական կառավարության որոշումների մասսայականացումը ամենուրեք առաջ է բերել քաղաքական և աշխատանքային վիթխարի վերելք։ Մեր բոլշևիկյան ագիտատորների խնդիրն է՝ իրենց ագիտացիոն-մասսայական աշխատանքով նպաստել այդ վերելքին, մեծ կառուցումների պատվերները կատարող բանվորներին, բանվորուհիներին



պարզաբանել սովետական կառավարության որոշումների կենսագործման հսկայական նշանակությունը։ Այդ խնդիրները ագիտատորները կարող են հաջողությամբ լուծել, եթե կոմունիստական շինարարության կոնկրետ հարցերի վճռումը անխզելիորեն կապեն աշխատավորների պրակտիկ գործունեության հետ։

Վլադիմիր Իլյիչ Լենինը դեռևս սովետական իշխանության առաջին տարիներին նշում էր, որ հարկավոր է մասսաներին կապել ընդհանուր տնտեսական կյանքի շինարարության հետ, դա պետք է գլխավորը և հիմնականը լինի յուրաքանչյուր ագիտատոր-պրոպագանդիստի աշխատանքում, և եթե նա այդ բանը յուրացնի, այն ժամանակ ապահովված կլինի նրա գործի հաջողությունը։

Ագիտացիոն աշխատանք ծավալելով ստալինյան դարաշրջանի վիթխարի կառուցումների շուրջը, մեր ագիտատորները պետք է մոբիլիզացնեն աշխատավորության ուժերը՝ յուրաքանչյուր ձեռնարկության, հիմնարկության, կոլխոզի, սովխոզի, ՄՏ. կայանի առաջ կանգնած խնդիրները բոլշևիկորեն կատարելու համար։ Դրա հետ միասին նրանք պետք է

դաճնան արտադրության և գյուղատնտեսության նորարարների, անվանի ստախանովականների աշխատանքի առաջավոր փորձի պրոպագանդիստներ, բացահայտեն աշխատանքում եղած թերությունները և օգնեն դրանց վերացմանը։

Մեր բոլշևիկյան ագիտատորների առաջ դրված է մեծ, պատասխանատու և պատվավոր խնդիր՝ աշխատավորությանը պատմել կոմունիզմի հոյակապ կառուցումների մասին, Սովետական ժողովրդի պատմական հաղթանակների մասին, պրոպագանդել Լենինի-Ստալինի պարտիայի քաղաքականությունը, բորբոքել սոցիալիստական մրցությունը կոմունիզմի շինարարության համար մղվող համաժողովրդական պայքարում։

—□—

# ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆ ՍՏԱԼԻՆՅԱՆ ՆՈՐԱԿԱՌՈՒՅՑՆԵՐԻՆ

Հայաստանի աշխատավորությունը, ողջ Սովետական ժողովրդի հետ միասին, մեծագույն ոգևորությամբ ընդունեց Վոլգայի վրա Կույբիշևյան և Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայանների, Գլխավոր Թուրքմենական ջրանցքի, Դնեպրի վրա Կախովկայի հիդրոէլեկտրակայանի, Հարավային Ուկրաինական և Հյուսիս Ղրիմյան ջրանցքների կառուցման մասին ՍՍՌՄ Մինիստրների Սովետի պատմական որոշումները։

Կարճ ժամանակամիջոցում մեր երկրում կկառուցվեն նոր հսկա էլեկտրակայաններ և միլիարդ ջրանցքներ, որոնք երկրին կտան տասնյակ միլիարդ կիլովատ ժամ լրացուցիչ էլեկտրաէներգիա, ոռոգելի կդարձնեն ավելի քան քսանհինգ միլիոն հեկտար ամայի հողեր, կվերափոխեն մեր հայրենիքի բնությունը։

Այդ շինարարություններին ձեռնամուխ է եղել սովետական ամբողջ ժողովուրդը։ Մեր

թերթերը, ռադիոն ամեն օր հրապարակում են նորանոր արդյունաբերական ձեռնարկությունների անուններ, որոնց կոլեկտիվներն արդեն իրենց արտադրած մեքենաները, սարքավորումները, շինանյութը և այլ պարագաներ են ուղարկել նորակառույցներին, կամ թե պատրաստվում են նրանց պատվերները կատարել ժամկետից շուտ:

Համաժողովրդական այդ շարժմանը ակտիվ կերպով մասնակցում են նաև մեր ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունների, հանքերի, երկաթուղու աշխատողների կոլեկտիվները:

Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանի կոլեկտիվը ժամկետից շուտ, դեռ սեպտեմբերի սկզբներին, նորակառույցներին ուղարկեց տրանսֆորմատորների առաջին պարտիան: Գործարանը Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանին ուղարկեց 16, իսկ Ստալինգրադի հիդրոէլեկտրակայանին՝ 5 հատ տրանսֆորմատոր:

Կույբիշևյան և Ստալինգրադյան հիդրոհանգույցների համար իր արտադրանքի առաջին պարտիան է ուղարկել Երևանի «Ավտոդետալ» գործարանի կոլեկտիվը: Գործարանը Կույբիշևյան հիդրոհանգույցին է ուղարկել ավտոմեքենայի 966 մաս, իսկ



Ստալինգրադյան հիդրոհանգույցին՝ 2322 մաս:

Այդ նորակառույցներին ուղարկած իր հեռագրի մեջ գործարանի կոլեկտիվը պատրաստակամություն է հայտնել նրանց պատվերները կատարել ժամկետից շուտ, բարձր որակով:

«Ավտոդետալ» գործարանի կոլեկտիվը Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայանի կառուցողներից ստացել է իր հեռագրի պատասխանը:

—«Ավտոտրակտորաբեռի» Ստալինգրադի մարզային գրասենյակի կոլեկտիվը,— ասված է հեռագրում,— «Ավտոդետալ» գործարանի կոլեկտիվին շնորհակալություն է հայտնում աշխարհի մեծագույն՝ Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայանի շինարարության ասպարեզում ստալինգրադցիներին ցուցաբերած օգնության համար: Ստալինգրադցիները խնդրում են այս տարվա երրորդ և չորրորդ եռամսյակներում ֆոնդից ավելի նորակառույցին ուղարկել ավտոմեքենաների 2.300 մաս:

Գործարանի բանվորներն ու ինժեներատեխնիկական աշխատողները այժմ, ծավալելով նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցությունը, պայքարում են ստալինգրադ-

յան գինգանոի կառուցողների պատվերը ժամկետից շուտ կատարելու համար։

Երևանի էլեկտրական ճշգրիտ չափիչ գործիքների և Հայլեներգոյի կենտրոնական լաբորատորիայի կոլեկտիվները պատրաստել են ստալինյան նորակառույցների համար ուղարկելու էլեկտրական ճշգրիտ չափիչ սարքեր՝ ամպերմետրեր, վոլտմետրեր, ամփոփիչ վատմետրեր, կախովի էլեկտրաչափիչներ։

Ստալինյան նորակառույցներին օգնելու իրենց պատրաստակամությունն են հայտնել Արթիկ-տուֆի Կույբիշևի անվան հանքի քարհատները։

Ալավերդու և Ղափանի պղնձագործները ևս պարտավորություն են վերցրել արտադրելու ավելի շատ պղինձ՝ էլեկտրալարերի արտադրության համար։ Հայաստանի երկաթուղայինները խոստանում են ժամանակին և արագ փոխադրել նոր կառուցումների համար ուղարկվող շինանյութերը և սարքավորումը։

—∞—

---

**ԿՈՆՍՈՒԼՏԱՑԻԱ**

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԸՆՏՐԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԸ ԱՇԽԱՐՀՈՒՄ ԱՄԵՆԱԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՍԻՍՏԵՄՆ Է

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրով Աշխատավորների դեպուտատների շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային Սովետների ընտրությունները մեր ռեսպուբլիկայում նշանակված են 1950 թվականի դեկտեմբերի 24-ի կիրակի օրը։ Այդ ընտրությունները նշանակալից իրադարձություն են ռեսպուբլիկայի աշխատավորների կյանքում։ Աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրություններն է՛լ ավելի կընդպաստեն Սովետական պետության հետագա ամրապնդմանը, նրանք է՛լ ավելի կամրապնդեն պարտիայի կապը ժողովրդի հետ։

Ընտրությունների ժամանակ աշխատավորները կիրագործեն սոցիալիզմի երկրի՝ աշխարհում ամենադեմոկրատական ընտրական սիստեմը, որը սահմանված է Ստալինյան Կոնստիտուցիայով, և ընտրությունները կանցկացնեն ընդհանուր, հավասար և ուղ-

ղակի ընտրական իրավունքի հիման վրա՝ գաղտնի քվեարկությամբ։

Տեղերում պետական իշխանության օրգանների՝ Հայկական ՍՍՌ աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրություններին կմասնակցեն 18 տարին լրացրած բոլոր քաղաքացիները, անկախ նրանց ռասսայական և ազգային պատկանելության, սեռի, դավանանքի, կրթական ցենզի, նստակյացության, սոցիալական ծագման, գույքային դրության ու անցյալ գործունեության, բացառությամբ խելագարների և այն անձանց, ովքեր ընտրական իրավունքներից զրկված են դատարանով։

Սովետական պետության ընտրական սիստեմը ՍՍՌՄ բոլոր քաղաքացիների համար ապահովում է իսկական ընդհանուր ընտրական իրավունքը։ Բուրժուական «դեմոկրատիան» շահագործող դասակարգի դիկտատուրայի արտահայտությունն է, նա չի կարող ծառայել ժողովրդի շահերին, դրա համար էլ նա հասարակության աշխատավորական լայն խավերի համար չի կարող ապահովել իսկական ընտրական իրավունք։

«Կապիտալիզմի օրով չի լինում և չի կարող լինել շահագործվող մասսաների իսկական մասնակցություն երկրի կառավարման



գործում, ամենադեմոկրատական կարգերում կառավարությունները կարգվում են ո՛չ թե ժողովրդի, այլ Ռոտշիլդների ու Ստիննեսների, Ռոկֆելլերների ու Մորգանների կողմից» Ի. Ստալին «Լենինիզմի հարցեր», 11-րդ հրատ., էջ 44)։

Մեր երկրում ընտրությունները համաժողովրդական տոն են հանդիսանում և նրանց նախապատրաստությունն անցնում է աշխատանքային հսկայական ոգևորության իրադրության մեջ։

Ընտրությունների նախապատրաստական ամբողջ աշխատանքը և բուն ընտրությունները մեր ռեսպուբլիկայում պետք է անցկացվեն աշխատավորների դեպուտատների շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային Սովետների ընտրությունների՝ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության կողմից հաստատված ընտրությունների Կանոնադրությանը և Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի լրիվին համապատասխան։ Ագիտատորների առաջնահերթ խնդիրն է՝ Սովետական Կոնստիտուցիայի մեծ սկզբունքներն ու մեր պետության ընտրական սիստեմի հիմնական դրույթները հասցնել յուրաքանչյուր ընտրողի, աշխատավորներին պարզաբանել բուրժուական կեղծ դեմոկրա-

տիայի հանդեպ սովետական իսկական ժողովրդական դեմոկրատիայի ունեցած առավելությունների ու գերազանցությունը։ Պետք է ձգտել, որպեսզի յուրաքանչյուր ընտրող պարզ ու հստակ կերպով պատկերացնի աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրությունները կազմակերպելու և անցկացնելու կարգը։ Դրան կարելի է հասնել բնակչության մեջ ագիտացիոն-մասսայական աշխատանքի լավ դրվածքով—սիստեմատիկ կերպով կազմակերպելով դասախոսություններ, զրույցներ ու կոնսուլտացիաներ, ստեղծելով ՍՍՌՄ-ի ու Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիաների, տեղական Սովետների ընտրությունների Կանոնադրության ուսումնասիրման խմբակներ և այլն։

Որո՞նք են սովետական ընտրական սիստեմի առանձնահատկությունները։ Մեր ընտրական օրենքը քաղաքացիների համար ոչ միայն ազդարարում է ընդհանուր ընտրական իրավունք, այլև, դրա հետ միասին, սահմանում է այնպիսի կարգ, որպեսզի հնարավորություն տա նրանց օգտվելու ընտրական իրավունքից և կատարելու իրենց քաղաքացիական պարտքը՝ մասնակցելով քվեարկությանը։

Մեր ընտրական օրենքի ընդհանուր լինելը



կայանում է նաև նրանում, որ Սովետական երկրում կանայք տղամարդկանց հետ հավասար վայելում են ընտրելու և ընտրվելու իրավունք։

Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի 113-րդ հոդվածի հիման վրա Սովետական Բանակի շարքերում գտնվող բոլոր քաղաքացիները ընտրություններին մասնակցելու և ընտրվելու իրավունք ունեն ՍՍՌՄ բոլոր քաղաքացիների հետ համահավասար։ Այնինչ Շվեցարիայում՝ նրա գովաբանված «դեմոկրատիայով», Մեքսիկայում, Արգենտինայում, Եգիպտոսում, Իրաքում, Իրանում, Աֆղանստանում կանայք զրկված են ընտրական իրավունքներից։ Բուրժուական շատ երկրներում զինվորները և նավաստիները իրավունք չունեն ընտրություններին մասնակցելու։

Բուրժուական երկրները իրենց կոնստիտուցիաներում նույնպես ազդարարում են «ընդհանուր ընտրական իրավունք», բայց կապիտալիստական ոչ մի պետություն չունի իրոք ընդհանուր ընտրական իրավունք։ Նրանք ուղղակի կամ անուղղակի կերպով սահմանափակող ցրացումների, «ուղղումների», վերապահումների ու «մեկնաբանությունների» օգնությամբ աշխատավորների լայն մասսաներին զրկում են ընտրական իրավունքից։ Կա-

կապիտալիստական երկրներում բուրժուազիան, սահմանելով զանազան ցենզեր (գույքային, տարիքային, նստակյացության, կրթության, ռասայական ու ազգային), ապահովում է իր համար քաղաքական առավելություններ և չունևոր աշխատավորական մասսաներին փաստորեն զրկում ընտրություններին մասնակցելու հնարավորությունից։ Մարքսը բուրժուական կոնստիտուցիաների մասին գրել է. «Կոնստիտուցիայի յուրաքանչյուր պարագրաֆը ինքն իր մեջ պարունակում է իր սեփական վերին և ստորին պալատը. ազատություն՝ ընդհանուր ֆրազով, ազատության վերացում՝ վերապահության մեջ»։

Ընտրությունների կանոնադրության համաձայն մեր ռեսպուբլիկայում ընտրական տեղամասերն ստեղծվում են այն հաշվով, որպեսզի բոլոր ընտրողները կարողանան ընտրությունների օրը լիովին մասնակցել ընտրություններին։ Առանձնացվում են համապատասխան շենքեր և կազմվում են ոչ մեծ ընտրական տեղամասեր։ Քաղաքներում, ավաններում, ինչպես նաև գյուղերում ու 2000 մարդուց ավելի բնակչություն ունեցող գյուղսովետների տերիտորիաներում ընտրական տեղամասերը կազմվում են բնակչության 1500—3000 մարդու հաշվով։ 2000-ից ոչ ա-



վելի բնակչություն ունեցող գյուղական սովետի տերիտորիան, որպես կանոն, կազմում է մեկ ընտրական տեղամաս։ Այն գյուղերում, կամ գյուղերի խմբում, որոնք ունեն 500-ից պակաս, բայց 300-ից ոչ ցածր բնակչություն, կազմվում են առանձին ընտրական տեղամասեր՝ եթե տարածությունն այդպիսի գյուղերից մինչև ընտրական տեղամասի կենտրոնը 10 կիլոմետրից ավելի չէ։ Այլ վայրերում, որտեղ գերակշռում են մանր բնակավայրերը, թույլ է տրվում կազմել ընտրական տեղամասեր՝ ոչ պակաս, քան հարյուր բնակչությամբ։ Լեռնային շրջաններում կարող են կազմվել տեղամասեր 100-ից պակաս, բայց 50-ից ոչ ցածր բնակչությամբ։ Ընտրական տեղամասեր են կազմվում նաև հիվանդանոցներին, ծննդաբերական տներին, սանատորիաներին կից, հաշմանդամների տներում։

Կանոնադրության 20-րդ հոդվածը նախատեսում է, որ երբ ընտրողների ցուցակը հրապարակելու և ընտրությունների օրվա միջև ընկած ժամանակամիջոցում ընտրողը փոխում է իր բնակության վայրը, համապատասխան Սովետի գործադիր կոմիտեն նրան տալիս է «Քվեարկելու իրավունքի վկայական»։ Նոր բնակավայրում (մշտական թե ժամանակավոր) ընտրողը մտցվում է ընտրողների ցու-

ցակի մեջ՝ ներկայացնելով հիշյալ վկայա-
կանը։ Այսպիսով, ընտրությունների կանո-
նադրությունը ստեղծում է բոլոր հնարավո-
րությունները, որպեսզի ընտրողները, ուր էլ
ընտրությունների օրը գտնվելու լինեն, կարո-
ղանան ազատ կերպով մասնակցել ընտրու-
թյուններին։

Չափազանց կարևոր նշանակություն ունի,
երբ, ըստ Կանոնադրության, ընտրողների
ցուցակները կախվում են ի գիտություն ընդ-
հանուրի՝ ընտրություններից 30 օր առաջ։ Դա
հնարավորություն է տալիս յուրաքանչյուր
ընտրողի՝ ծանոթանալու ցուցակներին, բողո-
քարկելու թույլ տրված աղավաղումների և
անճշտությունների համար ու ժամանակին
ուղղելու դրանք։

Յուրաքանչյուր ընտրող կարող է մտցվել
ընտրողների միայն մեկ ցուցակի մեջ և տըվ-
յալ Սովետի ընտրությունների ժամանակ ունի
միայն մեկ ձայն։

Բուրժուական ընտրական իրավունքը որոշ
հարուստ մարդկանց թույլ է տալիս ունենալ
մի քանի ձայն։ Օրինակ, Անգլիայում առան-
ձին ձեռնարկատերեր, որոնք անշարժ տնտե-
սություն ունեն ուրիշ օկրուգում, կարող են
այնտեղ երկրորդ ձայնը ունենալ։ ԱՄՆ-ում
գանգստերները ձայները վաճառում են քվեա-



տուփերը փոխելու և գողանալու միջոցով,
բյուլետենները փոխադրում են մեկ ընտրա-
կան օկրուգից մյուսը։

Սովետական ընտրական օրենքը նախա-
տեսում է, որպեսզի ըստ ընտրական օկրուգ-
ների դեպուտատության թեկնածուներ առա-
ջադրեն հասարակական կազմակերպություն-
ները կամ աշխատավորների ընկերություն-
ները, կոմունիստական պարտիական կազմա-
կերպությունները, պրոֆեսիոնալ միություն-
ները, կոոպերատիվ կազմակերպությունները,
երիտասարդական կազմակերպությունները և
կուլտուրական ընկերությունները։

Դեպուտատության թեկնածուն միևնույն
Սովետի համար կարող է քվեարկվել միայն
մեկ օկրուգում։

Կապիտալիզմի երկրներում թեկնածուների
առաջադրումը ձևականորեն ազատ է, սակայն
մի շարք լուրջ սահմանափակումներ աշխա-
տավոր բնակչության լայն խավերին զրկում
են իրենց թեկնածուներն առաջադրելու հնա-
րավորությունից։ Բուրժուական ընտրական
օրենքը ապահովում է, որպեսզի թեկնածուներ
առաջադրվեն ունևոր, շահագործող դասա-
կարգերի ներկայացուցիչներից. օրինակ,
քվեարկվելու համար Անգլիայում դեպուտա-
տության թեկնածուից պահանջվում է 150

ֆունտ ստերլինգ գումարի գրավական և այդ գումարը կարող է կորչել՝ եթե թեկնածուն չի հավաքել-բոլոր ձայների առնվազն 1/8-րդ մասը։

ԱՄՆ-ի շատ նահանգներում, հակակոմունիստական հիստերիայի ու տեռորի պայմաններում, պրոգրեսիվ կազմակերպությունների համար թեկնածուների առաջադրելը մեծ դժվարությունների հետ է կապված։

Մեր ընտրական օրենքում ամենայն որոշակիությամբ նշված է ընտրական տեղամասում ընտրողների քվեարկության կարգը։ Տվյալ վայրի ազգությունների լեզվով բյուլետենների տպագրումը, ընտրությունները ոչ աշխատանքային օրն անցկացնելը և ընտրողների մեջ լայն բացատրական աշխատանք ծավալելը զգալիորեն օգնում են քաղաքացիներին Ստալինյան Կոնստիտուցիայի վեհ սկզբունքներին համապատասխան՝ լիովին իրագործելու իրենց ընտրական իրավունքը։

Մեր ընտրական օրենքի դեմոկրատական բնույթի կարևոր մոմենտներից մեկը հանդիսանում է գաղտնի քվեարկության սկզբունքի պահպանումը։ Ընտրությունների կանոնադրության մեջ ասված է, որ ընտրությունների համար հատկացված շենքում առանձնացվում են հատուկ սենյակներ, կամ սարքավոր-



վում առանձին խցիկներ, որտեղ ընտրողները լրացնում են ընտրական բյուլետենները։ Այդ սենյակներում, կամ խցիկներում, ընտրական բյուլետենները լրացնելիս արգելվում է որևէ մեկի, այդ թվում նաև ընտրական հանձնաժողովի անդամների, ներկայությունը։ Ընտրում ձայն տալու ժամանակ ընտրությունների շենքում ընտրական ագիտացիա չի թույլատրվում։

Այլ է դրությունը կապիտալիստական երկրներում։

Բուրժուական երկրներում, ինչպես ասում է ընկեր Ստալինը, ընտրությունները տեղի են ունենում «Դասակարգային ընդհարումների պայմաններում, դասակարգային թշնամության պայմաններում, կապիտալիստների, կալվածատերերի, բանկիրների և կապիտալիզմի այլ շնաձկների կողմից ընտրողների վրա գործադրվող ճնշման պայմաններում։ Այդպիսի ընտրությունները, նույնիսկ եթե նրանք ընդհանուր, հավասար, գաղտնի և ուղակի են, չի կարելի միանգամայն ազատ և միանգամայն դեմոկրատիկ ընտրություններ անվանել»։

Աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրությունների նախապատրաստությունը տեղի է ունենում քաղա-

քական և արտադրական չտեսնված ոգևորության պայմաններում։ Մեր Հայրենիքի աշխատավորները Մեծ Հոկտեմբերի 33-րդ տարեդարձը և Հայաստանում Սովետական իշխանության հաստատման 30-ամյակը դիմավորում են Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսության ու կուլտուրայի զարգացման ասպարեզում ձեռք բերած նոր նվաճումներով։ Հայաստանի աշխատավորները, ինչպես բոլոր ընտրությունների ժամանակ, նույնպես և այս անգամ կցուցադրեն իրենց բարոյա-քաղաքական միասնությունը, սերը և նվիրվածությունը պանծալի բոլշևիկյան պարտիային, Սովետական կառավարությանը և աշխարհում ամենադեմոկրատական կոնստիտուցիայի ստեղծող՝ մեծ առաջնորդ ընկեր Ստալինին։

Ս. ՂԵՎՈՆԴՅԱՆ
Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության քարտուղար



# ՍՏԱԽԱՆՈՎԱԿԱՆՆԵՐԻ ԼԱՎԱԳՈՒՅՆ ՓՈՐՁԸ՝ ԲՈԼՈՐ ԲԱՆՎՈՐՆԵՐԻՆ

Յ. ԿՈՎԱԼՅՈՎ
«Պրոլետարսկայա պոբեդա» Նուրբ մահուդի ֆաբրիկայի ինժեներ

Մեր յուրաքանչյուր ձեռնարկությունում կան առաջավոր բանվորներ, ստախանովականներ, որոնք ձգտում են անընդհատ բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, իրենց ավանդը ներդնել հետպատերազմյան ստալինյան հնգամյակի ամենաարագ կատարման գործում։

Սակայն դեռ շատ ձեռնարկություններում աշխատանքի առաջավոր մեթոդները չեն դարձել բոլոր բանվորների սեփականությունը։ Ահա թե ինչու գործարաններում ու ֆաբրիկաներում հաճախ մեծ խզում գոյություն ունի ստախանովականների և բանվորների ամբողջ մասսայի աշխատանքի արտադրողականության միջև։

Ընկեր Ստալինը սովորեցնում է, որ սոցիալիստական մրցության հիմնական բա-

կոլեկտիվը հանդիսանում է հետ մնացողնե-
րին ընկերական օգնություն ցույց տալը,
որպեսզի ընդհանուր վերելք ձեռք բերվի։ Ա-
մեն մի կոլեկտիվում համառ ու սիստեմա-
տիկ աշխատանք է տարվում հետ մնացող-
ներին առաջավորների մակարդակին հասց-
նելու համար։ Տնտեսական ղեկավարները,
ինժեներա-տեխնիկական աշխատողները,
հասարակայնությունը, մամուլն ու ռադիոն
լայնորեն մասսայականացնում և տարածում
են ստախանովականների փորձը։ Ստախա-
նովյան դպրոցները, ստախանովյան երեքշա-
բաթօրյակները և աշխատանքի առաջավոր
մեթոդների արմատավորման մյուս ձևերը
հաստատապես մտել են մեր ձեռնարկու-
թյունների կենցաղի մեջ։ Խնդիրն այն է, որ
յուրաքանչյուր բանվոր բոլոր պրոցեսներում
և օպերացիաներում յուրացնի աշխատանքի
առաջավոր մեթոդները։

Իսկ ինչպե՞ս կազմակերպել աշխատանքի
ստախանովյան եղանակների մասսայական
կիրառումը։ Մեր ֆաբրիկայի ստախանովա-
կանների փորձն ուսումնասիրելիս մենք հա-
մոզվեցինք, որ արտադրության միևնույն
պայմաններում աշխատող միևնույն պրո-
ֆեսիայի տեր բանվորները աշխատանքի



տարբեր եղանակներ են օգտագործում։
Դիտողությունները ցույց տվին, որ մի որոշ
օպերացիայի վրա ստախանովականներից
ոմանք ավելի քիչ ժամանակ են ծախսում,
ոմանք՝ շատ։ Սակայն վերջիններս ուրիշ օ-
պերացիաների ընթացքում տնտեսելով ժա-
մանակը, կարողանում են աշխատանքի
բարձր արտադրողականության հասնել՝ ամ-
բողջությամբ վերցրած։

Ցույց տանք, թե դա ինչպես է կատար-
վում իրականում։

Մենք ուսումնասիրեցինք մեր երեք լավա-
գույն ջուլհակուհիների՝ Պ. Ս. Կոզլովայի, Կ.
Ց. Անիսիմովայի և Ն. Կ. Չեկինայի աշխա-
տանքը։ Նրանք բոլորն էլ սպասարկում են ա-
վելի մեծ թվով դազգահներ, քան սահման-
ված է պլանով, և միշտ գերակատարում են
արտադրական պլանները։ Երեք ստախանո-
վականուհիներից յուրաքանչյուրի աշխա-
տանքի եղանակները համեմատելու համար
մենք վերցրինք երկու հիմնական օպերա-
ցիա՝ հենքի թելի կտրվածքի վերացումը և
մաքոքի փոխումը։ Հետաքրքիր պատկեր
պարզվեց մեզ համար։

Նորմայի համաձայն մաքոքի փոխումը
պետք է կատարվի 2,8 վայրկյանում։ Ջուլ-

հակումներից ընկ. Կոլոյան այդ օպերացիան կատարում է 2,5 վայրկյանում, ընկ. Անխիմովան 3,2 վայրկյանում, իսկ ընկ. Չեկինան՝ 4 վայրկյանում: Պարզվեց, որ մյուս օպերացիան՝ հենքի թելի կտրվածքի վերացումը, նորմայով նախատեսված 16,5 վայրկյանի փոխարեն ընկ. Կոլոյան կատարում է 25,1 վայրկյանում, ընկ. Անխիմովան՝ 14 վայրկյանում, իսկ ընկ. Չեկինան՝ 30,3 վայրկյանում:

Ինչպես ցույց են տալիս այս տվյալները, առաջին օպերացիայի վրա ժամանակի ծախսման ավելի քիչ նորմայի է հասել ընկ. Կոլոյան, իսկ երկրորդ օպերացիայի վրա՝ ընկ. Անխիմովան: Սակայն ընկ. Չեկինան նույնպես բոլոր տվյալներն ունի ստախանովականուհի համարվելու: Մենք պարզեցինք, որ նա հիշյալ երկու օպերացիաների վրա ունեցած իր ժամանակի կորուստը ծածկում է՝ մեծ չափով կրճատելով դազգահների պարապուրդը: Այդ բանին նա հասնում է իր աշխատանքային օրը խելացիորեն պլանավորելու շնորհիվ, մի բան, որ առանձնապես կարևոր է բազմաքանակ դազգահներ սպասարկելիս:

Առաջավոր բանվորների աշխատանքի ե-



ղանակների ուսումնասիրությունը մեզ բերեց այն եզրակացության, որ ստախանովյան եղանակների հետ միասին անհրաժեշտ է ուսումնասիրել նաև աշխատանքային ժամանակի պլանավորման մեթոդները և աշխատանքային տեղի կազմակերպման դրվածքը, որովհետև դրանք նույնպես աշխատանքի արտադրողականության բարձրացման աղբյուրներ են:

Միևնույն պրոֆեսիան ունեցող երեք ստախանովականուհիների աշխատանքի մեթոդների ուսումնասիրությունը ցույց տվեց, թե որքան տարբեր են նրանց աշխատանքի եղանակները: Իսկ եթե ուսումնասիրելու լինենք, օրինակ, բոլոր առաջավոր ջուլհակուհիների, մանողների կամ մյուս պրոֆեսիաների գծով աշխատող բանվորների աշխատանքը, ապա կտեսնենք, որ տվյալ օպերացիայի վրա համարյա յուրաքանչյուր ստախանովական կիրառում է իր մեթոդը, որը տարբեր է մյուսի մեթոդից:

Հետևապես, անհրաժեշտ է ուսումնասիրել և ընդհանրացնել նորարարների փորձը՝ ըստ առանձին օպերացիաների ու եղանակների: Ընդգրկելով աշխատանքի ամենից ավելի արդյունավետ մեթոդները՝ կազմակերպել

դրանց մասսայական տարածումը տվյալ պրոֆեսիայի գծով աշխատող բանվորների մեջ:

*Հայտնի է, որ յուրաքանչյուր արտադրական պրոցես կազմված է առանձին օպերացիաներից ու եղանակներից։ Զոդհակի աշխատանքն, օրինակ, ընդգրկում է յոթ օպերացիա, մանող բանվորինը՝ վեց օպերացիա և այլն։ Բանվորը միայն այն ժամանակ կդառնա իր գործի վարպետը, երբ կատարելապես տիրապետի բոլոր եղանակներին։ Շատ կարևոր է նմանապես, որ բանվորը կարողանա զուգորդել եղանակներն ըստ ժամանակի, այլ խոսքով՝ կարողանա ճիշտ պլանավորել իր ժամանակը և ճիշտ կազմակերպել աշխատանքային տեղը։*

*Առանձին օպերացիաների և եղանակների գծով ստախանովյան փորձի ուսումնասիրման ու արմատավորման մեթոդը մշակելիս, որպես մի անբաժանելի տարր, երևան եկավ աշխատանքային ժամանակի պլանավորման և աշխատանքային տեղի կազմակերպման կատարյալ եղանակներ ընտրելու խնդիրը։*

*Մենք գործը չսկսեցինք նրանից, որ մի անգամից արմատավորենք ստախանովյան աշխատանքի բոլոր մեթոդները։ Մենք նախ*



*ուսումնասիրեցինք այն օպերացիաները, որ բանվորների* մեծամասնությունը *ճիշտ չէր կատարում։ Դրանից հետո գտանք կատարյալ մեթոդը և սկսեցինք այն տարածել բանվորների մեջ։ Իսկ երբ հանդիպում էինք այնպիսի դեպքերի, որ միևնույն պրոֆեսիայով աշխատող մարդկանց մեծ մասը հմուտ չէր կատարում մի քանի օպերացիա, ապա սահմանում էինք կատարելագործված մեթոդների արմատավորում՝ հաջորդական կարգով։ Սովորեցնում ենք նախ այն մեթոդները, որոնք* մեծ *տեսակարար կշիռ ունեն արտադրական նորմաների կատարման, կամ արտադրանքի որակի բարձրացման գործում։*

*Ստախանովյան փորձի ուսումնասիրումն սկսում ենք մի որոշ օպերացիա ամենից ավելի արագ կատարող 2—3 ստախանովականների եղանակների խրոնոմետրաժի ուսումնասիրությունից։ Ցեխի նորմավորողը խրոնոմետրաժի տվյալների հիման վրա կազմում է ստախանովյան եղանակների նկարագրությունը։ Դրանից հետո, ցեխի տեխնիկական խորհրդակցություններում կատարվում է աշխատանքի ամենաբարձր արտադրողական մեթոդների ընտրումը։ Տեխ-*

նիկական խորհրդակցությանը մասնակցում են ցեխի պետը, վարպետը, ենթավարպետները, հրահանգիչը և ստախանովականները։

Ինչի՞ց է ելնում տեխնիկական խորհրդակցությունը՝ մասսայական արմատավորման համար աշխատանքի ստախանովյան եղանակներ ընտրելիս։

Եթե նկարագրության մեջ կա այնպիսի եղանակ, որը թեև արագացնում է աշխատանքը, բայց դրա հետ միասին առաջ է բերում ֆիզիկական ուժերի ավելորդ լարվածություն, ապա այն մերժվում է։ Սովետական մարդկանց համար հասկանալի է այս սկզբունքը։ Ստախանովյան աշխատանքը ստացվում է տեխնիկային կատարելապես տիրապետելու և ռացիոնալ եղանակներ կիրառելու միջոցով, որոնք, բարձրացնելով արտադրողականությունը, հեշտացնում են բանվորների աշխատանքը։

Ջուլհակուհիներ ընկ. ընկ. Կոզլովան և Վասիլևան մաքոքը փոխում էին 2,5 վայրկյանում։ Լավ ցուցանիշ է այս։ Բայց ընկ. Վասիլևան մաքոքը փոխում էր աշխատանքի ժամանակ և դրանով խախտում անվտանգության տեխնիկան։ Նրա աշխատանքի եղանակը չէր կարելի ընդունել, որովհետև



այն կատարվում էր բանվորների առողջությունը վտանգի ենթարկելու ռիսկով։ Տեխնիկական խորհուրդը ոչ միայն չընդունեց մաքոքը փոխելու ընկ. Վասիլևայի մեթոդը, այլև առաջարկեց նրան, որ նա յուրացնի ստախանովականուհի ընկ. Կոզլովայի կողմից կիրառվող եղանակը։

Ստախանովյան ամենից ավելի արդյունավետ եղանակներ ընտրելիս տեխնիկական խորհուրդը հաշվի է առնում և այն, թե որքանով տվյալ եղանակը նպաստում է արտադրանքի որակի բարելավմանը և հումքի տնտեսմանը։

Տեխնիկական խորհուրդը նշում է մի որոշ եղանակ միևնույն պրոֆեսիայի բոլոր բանվորների կողմից մասսայորեն յուրացնելու միջոցառումները։ Նախապատրաստական մեծ աշխատանք է տարվում, նախքան բանվորներին ստախանովյան մեթոդներ սովորեցնելու գործին ձեռնարկելը։ Կայուն կերպով սահմանված ժամկետներում լիակատար կարգի է բերվում ամբողջ սարքավորումը։ Բանվորներն ապահովվում են գործիքների անհրաժեշտ պաշարով, զանազան հարմարանքներով ու նյութերով, առանց որոնց աներևակայելի է ստախանովյան աշխատանքը։

Առաջավոր բանվորների աշխատանքի այն եղանակները, որոնք հավանություն են ստանում տեխնիկական խորհրդակցությունում, քննվում և հաստատվում են տեխնիկական պրոպագանդայի մեթոդական բյուրոյի նիստում, որին պարտադիր կերպով մասնակցում է ֆաբրիկայի գլխավոր ինժեները։

Այն բանից հետո, երբ ընտրվում են եղանակները, հաստատվում է նրանց նկարագրության տեքստը։ Նկարագրությունը կազմվում է համառոտ, հանրամատչելի և տեխնիկապես գրագետ ձևով, որը տպագրվում է տպարանում՝ առանձին թերթիկներով։ Բացի դրանից, եղանակի նկարագրությունը լուսանկարներով և նկարներով կազմվում է առանձին մեծ պլակատների ձևով և փակցվում ցեխերում։

Նախքան ստախանովյան եղանակի մասսայական արմատավորմանը ձեռնարկելը, այդ եղանակը յուրացնում են հրահանգիչը, վարպետի օգնականը, ստախանովականները, եթե նրանք մինչ այդ ծանոթ չեն եղել դրան։ Այնուհետև ձեռնարկվում է բանվորների մասսայական հրահանգավորումը։ Սկզբում կարդացվում և բացատրվում է ստախանովյան եղանակի նկարագրությունը,



պարապմունքի ղեկավարը ցույց է տալիս, թե ինչպես պետք է կատարել տվյալ եղանակը։ Դրանից հետո բանվորուհիներն իրենք են կատարում օպերացիան՝ նոր ձևով։ Բանվորներին սովորեցնող հրահանգիչները և ստախանովականները հետևում են եղանակի ճիշտ կատարմանը, օգնում են նրանց՝ վերացնելու նկատված թերությունները։ Հենց որ բանվորը յուրացնում է ստախանովյան եղանակը, նրա անունը մտցվում է մատյանի մեջ։ Հատուկ ուշադրություն ենք դարձնում երիտասարդ, նորեկ բանվորների վրա։

Սովորաբար մի քանի օրում ստախանովյան եղանակին տիրապետում են բոլոր բանվորները։ Իսկ այն բանվորները, որոնք դանդաղ են յուրացնում նոր մեթոդը, շարունակում են այն սովորել նրանց համար կազմված խմբակում։ Տվյալ պրոֆեսիայի բանվորների հիմնական մասսան անցնում է հաջորդ եղանակի ուսումնասիրմանը։

Ստախանովյան փորձի կիրառման հաջողությունը կախված է այդ գործին ինժեներա-տեխնիկական աշխատողների մասնակցությունից։ Մեր ֆաբրիկայում ստեղծվել է ստախանովականների և ինժեներա-տեխնիկական աշխատողների սերտ համագործակ-

ցություն։ Ֆաբրիկայի գլխավոր ինժեները անմիջական մասնակցություն է ունենում բանվորներին մասսայական կարգով աշխատանքի առաջավոր մեթոդներ սովորեցնելու գործին։

Մեր. նախաձեռնությանը հավանություն տվեց և ջերմորեն պաշտպանեց ֆաբրիկայի պարտկազմակերպությունը։ Այն քննության առնվեց ցեխային պարտժողովներում և ընդհանուր պարտիական ժողովում։

Այդ գործում անգնահատելի օգնություն ցույց տվին ագիտատորները։ Ագիտկոլեկտիվում տրվեց մանրամասն զեկուցում, ագիտատորներին հանձնվեցին առաջավոր մեթոդների նկարագրության թերթիկները։ Ֆաբրիկայի 68 ագիտատորներից յուրաքանչյուրը բանվորներին պատմեց, թե ինչպիսի խոշոր պետական նշանակություն ունի ստախանովյան փորձի մասսայական արմատավորման մեթոդի կենսագործումը։

Ագիտատորները ստախանովյան փորձի պրոպագանդ էին անում ոչ միայն խոսքով, այլև գործով։ Ընկերներ Զարիֆովը, Բիտյուկովը, Բարանովը, Օլենինը, Իգնատովը, Ստեպինը և մյուսները աշխատանքի տեղում ցույց էին տալիս, թե ինչպես պետք է կա-



տարել աշխատանքային առանձին եղանակները։

Մեծ դեր խաղաց ցուցադրական ագիտացիան։ Աշխատանքի առաջավոր մեթոդների յուրացման կոչող պլակատները, լոզունգները, պատի թերթերը, բյուլետենները, «կայծակները»— այս բոլորը խապաս էին դրվել առաջադրված խնդիրների ամենաարագ կատարման գործին։

Թե որքանով մեր առաջարկի մասսայականացմանը մասնակցում էր գործարանային մամուլը, խոսում է այն փաստը, որ պատի թերթը լույս էր տեսնում ամսական 20 անգամ։ Մամուլը դարձավ ֆաբրիկայի դիրեկցիայի, պարտիական և պրոֆմիութենական կազմակերպությունների իսկական մարտական օրգանը՝ ստախանովյան փորձի մասսայական արմատավորման համար մղվող պայքարում։

Կարճ ժամանակամիջոցում մեր ֆաբրիկայում զգալի չափով բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը—մանվածքի գծով՝ 20, գործվածքի գծով՝ 5 տոկոսով։ Խիստ կերպով կրճատվեց արտադրական նորմաները թերակատարող բանվորների թիվը.

մանվածքային ցեխում դրանք կազմում են հազիվ 1—2 տոկոս, իսկ գործվածքային ցեխում՝ 4 տոկոս։ Ֆաբրիկայի կոլեկտիվը յոթամսյա պլանը կատարեց ժամկետից շուտ և երկրին պլանից դուրս տվեց հազարավոր մետր բրդյա գործվածքեղեն։ Բանվորները ամեն ամիս տնտեսում են հումքն ու նյութերը, ավելացնում են առաջին տեսակի արտադրանքի քանակը։

Մեր փորձը ընդօրինակել են թեթև արդյունաբերության շատ ձեռնարկություններ։ Այն սկսվում է կիրառվել ժողովրդական տնտեսության նաև այլ ճյուղերում։

(«Блокнот агитатора» № 25, 1950 г.)

—□—



# ԻՆՉՊԵՍ ՀԱՍԱ ԲԱՐՁՐ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ

Տ. ԹՈՒՄԻԿՅԱՆ

Երևանի Ձերժինսկու անվան Դազգահաշինական գործարանի արագագործ խառատ

1948 թվականին ամբողջ երկրում հայտնի դարձավ Լենինգրադի Սվերդլովի անվան գործարանի խառատ, այժմ Ստալինյան մրցանակի լաուրեատ, Հենրիխ Բորտկևիչի նախաձեռնությունը՝ մետաղների գերարագ մշակման մեթոդին անցնելու գործում։ Այդ նախաձեռնությանը ջերմորեն արձագանքեցին ինչպես մեր ռեսպուբլիկայի մետաղամշակման ձեռնարկությունների, այնպես էլ մեր գործարանի բանվորներն ու ինժեներատեխնիկական աշխատողները։

Մեր գործարանում հանդես եկան տասնյակ ստախանովական խառատներ և ֆրեզերագործներ, որոնք ինժեներ-տեխնոլոգների, ինչպես նաև գլխավոր ինժեների օգնությամբ մանրամասն կերպով ուսումնասիրե-

ցին Բորտկևիչի աշխատանքի մեթոդը և այն սկսեցին կիրառել մեզ մոտ՝ արտադրության մեջ։

Ես ուզում եմ պատմել, թե ես ինչպես եմ հասել բարձր արտադրողականության։ Ամենից առաջ պետք է ասեմ, որ բարձր արտադրողականության հասնելու համար ես ամեն օր պլանավորում եմ իմ աշխատանքային ժամերը։ Մինչև աշխատանքի սկսվելը կարգի եմ բերում դազգահը, գործիքները, կիսաֆաբրիկատը, իսկ օժանդակ նյութերը տեղավորում եմ դազգահի մոտ, որպեսզի հետո ժամանակ չկորցնեմ դրանք ձեռք բերելու համար։ Ես հաշվել եմ, որ աշխատանքի տեղի լավ նախապատրաստումը հնարավորություն է տալիս զգալիորեն բարձրացնելու արտադրողականությունը։ Իհարկե, դա կարևոր հանգամանք է և կարելի է ասել աշխատանքի հաջողության առաջին պայմանն է։ Բայց ես, հիմնականում, աշխատանքի բարձր արտադրողականության հասա կիրառելով մետաղների գերարագ մշակման մեթոդը։

Ես մեր գործարանի ինժեներ-տեխնոլոգների օգնությամբ, խառատային դազգահի շպինդել կոչվող մասի տեխնոլոգիական մը-



շակումը սահմանված նորմայի դիմաց արագացրի 5—6 անգամ։ Այդ հաջողությանը հասա կիրառելով մետաղների գերարագ մշակման նոր մեթոդ։ Այդ մեթոդին անցնելու համար ամենից առաջ հարկավոր է ունենալ ճշգրիտ, անխափան կերպով աշխատող դազգահ՝ ամուր ամրացված հիմքի վրա։ Այդ անհրաժեշտ է, որպեսզի մետաղների մշակման ժամանակ ցնցումներ չառաջանան։ Այդ նպատակով էլ ինժեներների օգնությամբ կանոնավորեցի առանցկակալները, ֆրիկցիոնի դիսկաները, ստուգեցի սուպորտի ընթացքը, վերացրի տեխնիկական կարգի մի շարք թերություններ։ Դրանից հետո հավասարակշռման ենթարկեցինք դազգահի պտտվող մասերը, փոխեցինք մոտորը, դնելով ավելի մեծ հզորություն՝ 5,5 կիլովատ ուժի մոտոր։ Քանի որ ես հիմնականում մշակում եմ «1615» տիպի խառատային դազգահի շպինդել կոչվող կարևոր մասը № 45 մարկայի պողպատից և դազգահի ուրիշ դետալներ, ուստի ձգտում եմ ամեն դետալի մշակման պրոցեսը, նրա մշակման տեխնոլոգիան բարեփոխել, հեշտացնել։

Մետաղների գերարագ մշակման մեթոդին անցնելու համար ես մասնակի կերպով մո-

դեռնացրի իմ դազգահը։ Էլեկտրամոտորի հզորությունն ավելացնելու հետ միասին մեծացրի նաև դազգահի մատուցումը։ Մինչև այդպիսի փոփոխություն կատարելը ես օգտագործում էի սովորական կտրիչ և հասնում էի 35—40 մետր-րոպե արագության։ Գերարագ հատման անցնելով ես օգտագործեցի կարծր համաձուլվածքի կտրիչներ, անփոփոխ թողնելով մատուցումն ու հատման խորությունը։ Այդ բանը մեծ չափով նպաստեց արտադրողականության բարձրացմանը. մետաղի հատման արագությունը ավելացավ 5—6 անգամ։

Դետալի նախնական, կոպիտ մշակման ժամանակ, օգտագործում եմ Տ 15 Կ 6 կարծր ձուլվածքի կտրիչներ, մետաղի հատման արագությունը մեկ րոպեյում հասցնելով 190 մետրի։ Այս դեպքում մատուցումը կազմում է 0,6 միլիմետր, իսկ տաշելու (կտրելու) խորությունը 2,5—3 միլիմետր։ Դետալի մաքուր մշակման ժամանակ մետաղի հատման արագությունը հասցրել եմ 250 մետր-րոպեի, ընդ որում մատուցումը կազմում է 0,2 միլիմետր և կտրման խորությունը՝ 0,8—1,0 միլիմետր։

Սակայն գերարագ հատման մեթոդը կի-



րառելու սկզբնական շրջանում ես հանդիպում էի որոշ դժվարությունների, որոնք ինժեներների օգնությամբ աստիճանաբար վերացնում էի։ Օրինակ. առաջին դժվարությունն այն էր, որ հետին հենարանի կենտրոնը սկսում էր «այրվել» և համաձուլվել մշակվող դետալի հետ։ Այդ պատճառով էլ որոշեցի անցնել պտտվող կենտրոնի օգտագործմանը։ Այդ բավականին օգնեց գործին, բայց հիմա էլ մեծ արագության չէին դիմանում շարժական լյունետի բռնակները։ Այդ հարցն էլ լուծվեց, բռնակները փոխարինեցի առանցքակալներով։

Գերարագ հատման համար խոչընդոտ էր հանդիսանում նաև տաշեղը (ստրուժկան)։ Այդ տաշեղը ստացվում էր երկար ժապավենի ձևով, փաթաթվում կտրիչի շուրջը և դրանով խանգարում էր աշխատանքին։ Այստեղ էլ օգնության եկավ Երևանի Պոլիտեխնիկ ինստիտուտի պրոֆեսոր ընկ. Կասյանը, որը ստեղծել է գերարագ հատման կտրիչներ։ Այդ կտրիչները հատման ժամանակ մանրացնում են տաշեղը և մեծ չափով հեշտացնում խառատի աշխատանքը։

Ես գերարագ հատման մեթոդը կիրառում եմ ոչ միայն դետալների արտաքին, այլև

ներքին տաշումների ժամանակ, բայց, իհարկե, ավելի ցածր արագությամբ՝ մեկ րոպեյում 100—120 մետր։

Աշխատանքի արտադրողականության բարձրացմանը մեծ չափով նպաստեցին նաև տեխնոլոգիական այն բարեփոխումները, որոնք ես մտցրի արտադրության մեջ։ Այսպես, ես փոփոխության ենթարկեցի շլիֆելի պատրաստման տեխնոլոգիան։ Հին տեխնոլոգիայով ներքին կոնը ջերմային մշակումից հետո նախնական հղկման էր ենթարկվում, որը հանդիսանում էր հիմք արտաքին վզիկների հղկման համար։ Հետո, արտաքին վզիկներն ընդունելով որպես հիմք, վերջնականապես հղկվում էր ներքին կոնը։ Ես որպես հիմք ընդունեցի ոչ թե կոնը, այլ ֆասկան։ Մաքուր մշակման համար թողնում եմ շատ քիչ բաժին՝ 0,1—0,2 միլիմետր հաստության շերտ։

Այսպիսով, կատարելագործելով տեխնոլոգիան, ես կրճատեցի նախնական հղկման գործողությունը և դրա շնորհիվ մեկ դետալի մշակման պրոցեսի ընթացքում խնայեցի 27 րոպե։ Տնտեսելով մեքենայական ժամանակը, անհրաժեշտ էր կրճատել նաև օժանդակ ժամանակը, քանի որ դա դետալի մշակման



ընդհանուր ժամանակի զգալի տոկոսն է կազմում։ Իսկ օժանդակ ժամանակը գլխավորապես ծախսվում է դետալը դազգահի վրա ամրացնելու, նրանից հանելու և չափումներ կատարելու վրա։

Մինչև գերարագ հատման մեթոդին անցնելը, եսստիպված էի լինում կանգնեցնել դազգահը, հեռացնել կտրիչը, չափել, մոտեցնել կտրիչը, կտրել առվակները, և այսպես կրկնել մի քանի անգամ։ Այդ բոլորը ինձնից բավական ժամանակ էր պահանջում։

Իսկ հիմա պատրաստել եմ հատուկ շաբլոն, որը մասշտաբային քանոնի հետ միասին ամրացրել եմ դազգահի վրա։ Այդ շաբլոնի օգնությամբ, առանց դազգահը կանգնեցնելու, կտրում եմ բոլոր առվակները՝ գծագրի չափերին համապատասխան։ Այդ շաբլոնի առավելությունն այն է, որ նա հնարավորություն է տալիս չափումները կատարել առանց դազգահը կանգնեցնելու և առանց չափիչ գործիքներ օգտագործելու։ Այդ բոլոր օպերացիաներից բավական ժամանակ է տնտեսվում։ Այսպիսով, կիրառելով այդ մեթոդը ես մեկ դետալի մշակման ժամանակը կրճատեցի 20 տոկոսով։ Միայն այդ բարեփոխության շնորհիվ իմ աշխատանքի ար-

տադրողականությունը բարձրացավ ավելի քան 23 տոկոսով։

Դետալների մշակման պրոցեսում մտցրել եմ նաև ուրիշ բարեփոխություններ։ Այսպես, դալկայի մշակման ժամանակ առաջներում օգտագործում էի 4 կտրիչ։ Սակայն փոփոխություն մտցնելով կտրիչների ձևի մեջ, ես կարողացա այդ կտրիչները փոխարինել երկուսով, դրանով իսկ խնայեցի բավական ժամանակ։ Այդ հնարավորություն տվեց ինձ ավելի քիչ քանակությամբ կտրիչների մետաղ ծախսել՝ կրճատելով օժանդակ ժամանակը։

Պետք է ասել, որ այդ հաջողություններին հասնելով ես երբեք աչքաթող չէի անում արտադրանքի որակը։ Պատրաստելով խառատային դազգահի ամենապատասխանատու մասը՝ շպինդելը, ես միշտ ձգտել եմ հասնել արտադրական բարձր ցուցանիշների։ Դեռ չի եղել մի դեպք, երբ ասենք, տեխնիկական վերահսկողության բաժնի կողմից իմ արտադրած դետալները խոտանվեն, ընդհակառակը, դետալների որակը միշտ ճանաչվել է որպես գերազանց։ Աշխատանքի բարձր արտադրողականության հասնելու, տեխնոլոգիական զգալի բարեփոխումներ



մտցնելու ասպարեզում ինձ, ինչպես նաև մյուս ստախանովականներին, միշտ օգնել են ինժեներներ Բ. Շատվորյանը, Մ. Մնացականյանը, Ա. Թումանյանը, Լ. Մաթևոսյանը և ուրիշներ։ Ես այդ ինժեներների օգնությամբ յուրացնում եմ մետաղների մշակման ասպարեզում աչքի ընկնող հաջողությունների հասած ստախանովականների առաջավոր փորձը, այն իմ աշխատանքում կիրառելու համար։

Այժմ արդյունաբերության բոլոր ճյուղերում, ինժեներ Կովալյովի մեթոդով, լայնորեն ուսումնասիրվում է առաջավորների փորձը, որպեսզի յուրաքանչյուրից վերցվի լավագույնը, ընդհանրացվի այն և արմատավորվի արտադրության մեջ։ Մեր գործարանում նույնպես լայն նախապատրաստական աշխատանք է կատարվում այդ ուղղությամբ։

Ես վաղուց կատարել եմ իմ հնգամյակը և այս օրերին նորմաներս կատարում եմ 300 տոկոսով։ Այժմ ձգտում եմ ավելի կատարելագործել արտադրական պրոցեսները, բարեփոխել տեխնոլոգիան, ավելացնել մետաղի հատման արագությունը և Մեծ տոնը դիմավորել արտադրական բարձր ցուցանիշներով։

# ՄԻԱՎՈՐՎԱԾ ԱԶԳԵՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԳԼԽԱՎՈՐ ԱՍԱՄԲԼԵԱՅԻ ՀԻՆԳԵՐՈՐԴ ՍԵՍԻԱՆ

Միավորված Ազգերի Կազմակերպության Գլխավոր Ասամբլեայի հինգերորդ սեսիան տեղի է ունենում միջազգային այնպիսի լարված իրադրության մեջ, երբ ամերիկյան իմպերիալիստները, ձգտելով բորբոքել համաշխարհային նոր պատերազմի հրդեհը, ուղղակի ագրեսիվ գործողություններ են սկսել։ Այս տարվա հունիսի վերջերից սկսած ամերիկյան իմպերիալիստները արյունահեղ պատերազմ են մղում կորեական ժողովրդի դեմ։ Ամերիկյան կառավարող շրջանները իրենց զավթողական գործողությունները քողարկում են Միավորված Ազգերի Կազմակերպության դրոշով։ Այդպիսով, ամերիկյան իմպերիալիստները ձգտում են Միավորված Ազգերի Կազմակերպությունը, որ կոչված է ծառայելու ընդհանուր խաղաղության և ժողովուրդների անվտանգության գործին, դարձնել մի շիրմա՝ իրենց բոլոր ագրեսիվ գործողությունները սքողելու համար։



Այն պայքարը, որ ներկայումս մղվում է մի կողմից՝ դեմոկրատիայի ու խաղաղության ուժերի և մյուս կողմից՝ ռեակցիայի ու պատերազմի հրձիգների միջև, իր արտահայտությունն է գտնում նաև Միավորված Ազգերի Կազմակերպության այժմյան սեսիայում։

Պատերազմը մղվում է ոչ միայն Կորեայում։ Արյունահեղ պատերազմ է տեղի ունենում նաև Վյետնամում, Բիրմայում, Մալայայում, որտեղ ֆրանսիական ու անգլիական իմպերիալիստները փորձում են ԱՄՆ-կառավարող շրջանների օգնությամբ խեղդել ազգային-ազատագրական շարժումը։

Զբաղվարարվելով Կորեայում կատարած ինտերվենցիայով, ամերիկյան իմպերիալիստները ագրեսիա են պատրաստում նաև դեմոկրատական Չինաստանի դեմ։ Գլխավոր Ասամբլեայի սեսիան բացելու նախօրյակին տեղի ունեցավ Հյուսիս-Ատլանտյան ագրեսիվ բլոկի մասնակից երկրների խորհրդակցություն՝ ամերիկյան պետական քարտուղար Աչեսոնի ղեկավարությամբ, որը ձգտում էր ստեղծել այսպես կոչված «արևմտա-եվրոպական բանակ», այսինքն՝ ամերիկյան իմպերիալիստներին ապահովել թնդանոթի մսով։ Նյու-Յորքում տեղի ունեցավ նաև ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի ար-

տաքին գործերի մինիստրների խորհրդակցություն, որի ընդունած որոշումները նպատակ ունեն՝ վերածնել գերմանական իմպերիալիզմը, ագրեսիայի պլացդարմ դարձնել արևմտյան Գերմանիան։ Այս բոլորը խոսում է այն մասին, որ ռեակցիոն ուժերը՝ ամերիկյան իմպերիալիստների ղեկավարությամբ տենդագին կերպով քայքայիչ գործունեություն են ծավալել ընդդեմ խաղաղության։

Միավորված Ազգերի Կազմակերպության Գլխավոր Ասամբլեայի սեսիայի բացման առաջին իսկ օրերից ծավալվեց պայքարը միջազգային քաղաքականության երկու ուղղությունների միջև։ Մեկ ուղղությունը՝ Սովետական Միության քաղաքական գիծն է, որին հավանություն են տալիս դեմոկրատական երկրները և որի նպատակն այն է, որ Միավորված Ազգերի Կազմակերպությունն ընդունակ լինի կատարելու իր խնդիրները և դառնալու խաղաղության իսկական գործիք։ Մյուս ուղղությունը՝ ամերիկյան դելեգացիայի և նրա հետևից քարշ եկող մյուս կապիտալիստական երկրների դելեգացիաների գիծն է, Ուոլ-Ստրիտի մոնոպոլիստների առաջադրանքները կատարողների գիծը։ Սովետական Միության դիրքի և Ամերիկայի Միացյալ Նահանգների դիրքի միջև եղած այս ար-



մատական տարբերությունը երևան եկավ Գլխավոր Ասամբլեայի աշխատանքի առաջին իսկ օրից, ընդհանուր դիսկուսիայի ընթացքում, երբ տարբեր երկրների դելեգացիաներ արտահայտվեցին Միավորված Ազգերի Կազմակերպության վերջին տարիների գործունեության արդյունքների մասին և երբ իրենց տեսակետները շարադրեցին այն խնդիրների վերաբերյալ, որոնք դրված են Միավորված Ազգերի Կազմակերպության առաջ։ Մի անգամից պարզ դարձավ, որ ամերիկյան դելեգացիան մտադիր չէ միջազգային համաձայնություն հասնելու, ընդհակառակը, նա ձգտում է փաստորեն վերացնել Միավորված Ազգերի Կազմակերպությունը որպես մի օրգանի, որն ընդունակ լինի պայքարելու խաղաղության համար։ Ամերիկյան առաջարկները, որոնք շարադրված են պետական քարտուղար Աչեսոնի ճառում և ամերիկյան դելեգացիայի ուղերձում, արմատապես հակասում են Միավորված Ազգերի Կազմակերպության Կանոնադրությանը և սկզբունքներին։ Ամերիկյան դելեգացիան առաջարկում է՝ այն դեպքում, եթե Անվտանգության Խորհրդում խաղաղության և անվտանգության պահպանման հարցերի քննարկման ժամանակ միաձայնություն ձեռք չբերվի հինգ մշտական ան-

դամների միջև, 24 ժամվա ընթացքում հրավիրել Ասամբլեայի հատուկ սեսիա։ Ասամբլեայի նման սեսիաները, ի խախտումն Կանոնադրության, պետք է փոխարինեն Անվտանգության Խորհրդին։ Բացի դրանից, ամերիկյան դելեգացիան առաջարկում է, որպեսզի ստեղծվեն Միավորված Ազգերի Կազմակերպության զինված ուժեր, որոնք գործեին ոչ միայն Անվտանգության Խորհրդի որոշմամբ, այլև՝ Գլխավոր Ասամբլեայի հանձնարարությամբ։ Այսպիսով, ամերիկյան առաջարկների հիմնական հարվածն ուղղված է Անվտանգության Խորհրդի դեմ, որի վրա, Միավորված Ազգերի Կազմակերպության կանոնադրությամբ դրված է «ընդհանուր խաղաղությունը և անվտանգությունը պահպանելու գլխավոր պատասխանատվությունը»։ Ինչպես հայտնի է, Անվտանգության Խորհրդում բոլոր կարևոր որոշումներն ընդունվում են միայն այն դեպքում, եթե միաձայն քվեարկում են Անվտանգության Խորհրդի մշտական անդամ հանդիսացող հինգ մեծ տերությունները։ Անվտանգության Խորհրդի հինգ մշտական անդամների միաձայնության սկզբունքը Միավորված Ազգերի Կազմակերպության հիմքն է, որովհետև դրանում արտահայտված է մեծ տերությունների համա-



գործակցությունն ապահովելու ձգտումը, որը համապատասխանում է ընդհանուր խաղաղության և անվտանգության շահերին։ Ամերիկյան առաջարկները, ըստ էության, ուղղված են հինգ մեծ տերությունների միաձայնության կանոնի դեմ, քանի որ Գլխավոր Ասամբլեայում, որին ցանկանում են Անվտանգության Խորհրդի ֆունկցիաներ վերապահել ամերիկացիները, մեծ տերությունների միաձայնության կանոն գոյություն չունի։ Պարզ է, որ ամերիկացիներն այստեղ նկատի ունեն մի բան, որ Գլխավոր Ասամբլեայում, օգտագործելով իրենց հլու-հնազանդ «մեծամասնությունը», նրանց կհաջողվի Գլխավոր Ասամբլեայում անցկացնել իրենց ձեռնտու այն որոշումները, որ չի հաջողվում անցկացնել Անվտանգության Խորհրդում։

Ամերիկյան առաջարկները, անկասկած, խարխլում են Միավորված Ազգերի Կազմակերպության հիմքերը, ձգտելով այն դարձնել իմպերիալիստական ագրեսիայի գործիք։

Ի հակակշիռ ԱՄՆ-ի դելեգացիայի, Սովետական դելեգացիան Գլխավոր Ասամբլեում հանդես է գալիս որպես միջազգային համագործակցության պայքարի հետևողական մարտիկ, որի բոլոր ջանքերն ուղղված են Միավորված Ազգերի Կազմակերպության

ամրապնդմանը։ Գլխավոր Ասամբլեայի սեպտեմբերի 20-ի պլենար նիստում ունեցած իր ելույթում սովետական դելեգացիայի ղեկավար ընկ. Վիշինսկին Գլխավոր Ասամբլեայի քննարկմանը դրեց «Նոր պատերազմի սպառնալիքը վերացնելու և խաղաղության ու ժողովուրդների անվտանգության ամրապնդելու դեկլարացիան»։ Այդ դեկլարացիայում վճռական կերպով դատապարտվում է պատերազմի պրոպագանդան, որ անց է կացվում մի շարք երկրներում։

Դեկլարացիան կոչ է անում՝ արգելել նոր պատերազմի պրոպագանդան, իսկ մեղավորներին պատասխանատվության ենթարկել։ Դեկլարացիան Գլխավոր Ասամբլեայի անունից դատապարտում է «ատոմային զենքի օգտագործումը, որպես ագրեսիայի ու մարդկանց մասսայական ոչնչացման զենքի, և հայտարարում է, որ ատոմային զենքն անպայման պետք է արգելվի»։ Դեկլարացիայում նշվում է, որ այն կառավարությունը, որն առաջինը կօգտագործի ատոմային ռումբը, պետք է դիտվի որպես պատերազմի հանցագործ։

Դեկլարացիայում առաջարկվում է «որպեսզի Ամերիկայի Միացյալ Նահանգները, Մեծ Բրիտանիան, Ֆրանսիան և Սովետական



Միությունը միավորեն իրենց խաղաղ ջանքերը և միմյանց միջև կնքեն խաղաղության ամրապնդման պակտ», և «որպեսզի այդ մեծ տերությունները 1950 թվականի ընթացքում մեկ երրորդով կրճատեն իրենց զինված ուժերը (ցամաքային զորքեր, բոլոր տեսակի ռազմական ավիացիա, ռազմա-ծովային նավատորմ) այն հաշվով, որ զինված ուժերի հետագա կրճատման հարցը քննարկման դրվի Գլխավոր Ասամբլեայի առաջիկա սեսիաներից մեկում»։

Անտարակույս Սովետական դելեգացիայի այս առաջարկները ծառայում են Միավորված Ազգերի Կազմակերպության ամրապնդման գործին, խաղաղության ամրապնդման և պատերազմի սպառնալիքի վերացման գործին։ Սովետական Միությունը Գլխավոր Ասամբլեայում հանդես եկավ կորեական ժողովրդի պաշտպանությամբ, Սովետական Միության, Ուկրաինայի, Բելոռուսիայի, Լեհաստանի և Չեխոսլովակիայի դելեգացիների անունից առաջարկելով մի բանաձև, որով նախատեսվում էր՝ դադարեցնել պատերազմական գործողությունները Կորեայում, այնտեղից դուրս բերել օտարերկրյա զորքերը և ամբողջ երկրում անցկացնել ընդհանուր ընտրություններ՝ Կորեային սահմա-

նակից պետությունների ներկայացուցիչներից կազմված հանձնաժողովի հսկողությամբ։ Սակայն Գլխավոր Ասամբլեայի՝ ամերիկյան իմպերիալիստներին հլու մեծամասնությունը մերժեց այդ բանաձևը և դրա փոխարեն ընդունեց ութ տերությունների՝ ամերիկացիների թխած բանաձևը, որի նպատակն է ընդլայնել Կորեայի ռազմական օկուպացումը ինտերվենտների ուժերի կողմից։

Սովետական Միությունը հանդես եկավ նաև Չինաստանի տերիտորիալ ամբողջականության ու անձեռնմխելիության պաշտպանությամբ, առաջարկելով Գլխավոր Ասամբլեում քննության առնել Չինաստանի դեմ կատարված ամերիկյան ագրեսիայի հարցը։ Միավորված Ազգերի Կազմակերպությունում Սովետական Միության կատարած ամբողջ գործունեությունը մի ավելորդ անգամ վկայում է, որ Սովետական Միությունը ընդհանուր խաղաղության հուսալի պատվարն է, բոլոր ժողովուրդների շահերի համար հետևողական մարտնչողը։

Որքան էլ ամերիկյան իմպերիալիստները իրենց կաշվից դուրս գալու լինեն, օգտագործելով Գլխավոր Ասամբլեայի իրենց հլու մեխանիկական «մեծամասնությունը», միևնույն է, այդ «մեծամասնությունը» շինծու է, որով-



հետև այն ներկայացնում է ոչ թե ժողովուրդներին, այլ ծախու բուրժուական կառավարություններին, որոնց սանձը բռնած քարշ են տալիս իրենց հետևից ամերիկյան իմպերիալիստները։ Իսկ բոլոր երկրների մարդկանց իսկական մեծամասնությունը գնում է Սովետական Միության հետևից, որը պաշտպանում է խաղաղության գործը։ Այդ մասին է խոսում խաղաղության համար մղվող կամպանիայի թափն ու ծավալը։ Խաղաղության կողմնակիցների շարժումն աճում ու ընդլայնվում է ամենուր։

Ատոմային զենքն արգելելու վերաբերյալ Ստոկհոլմի կոչի տակ դրված ստորագրությունների թիվը սեպտեմբերին հասավ ավելի, քան 350 միլիոնի։ Լայնորեն ծավալվում է խաղաղության կողմնակիցների Համաշխարհային երկրորդ կոնգրեսի գումարման կամպանիան, որը կայանալու է այս տարվա նոյեմբերին, Անգլիայում։ Սույն թվականի օգոստոսին Պրագայում տեղի ունեցած խաղաղության կողմնակիցների Մշտական կոմիտեի բյուրոյի նիստը, որն ընդունեց խաղաղության կողմնակիցների Համաշխարհային երկրորդ կոնգրես հրավիրելու որոշումը, հրապարակեց մի դիմում, որի մեջ միլիոնավոր մարդկանց անունից վճռական պատրաստա-

կամություն է արտահայտում պայքարելու խաղաղության համար։ Այդ դիմումի մեջ ասված է.

«Խաղաղության կողմնակիցները հանդես են գալիս ընդդեմ ագրեսիայի, որտեղ էլ այն կատարվելիս լինի, և դատապարտում են դրսից կատարվող զինված միջամտությունը ժողովուրդների ներքին գործերին։ Նրանք պահանջում են վերջ տալ նման ինտերվենցիային այն երկրներում, որտեղ այդ տեղի է ունենում»։

Այսպիսով, մարդկության իսկական մեծամասնությունը, նրանց ճնշող մեծամասնությունը բոլոր երկրներում Սովետական Միության կողմն է, որովհետև Սովետական Միությունը, կենսագործելով լենինյան-ստալինյան արտաքին քաղաքականության սկզբունքները, և՛ Միավորված Ազգերի կազմակերպությունում, և՛ ամենուրեք պայքարում է խաղաղության համար՝ ընդդեմ իմպերիալիստական պատերազմի, դրանով իսկ պաշտպանելով բոլոր երկրների աշխատավորների շահերը։

Լ. ՄԱՆԱՍԵՐՅԱՆ

—∞—



# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## I

## ԼԵՆԻՆԸ ԵՎ ՍՏԱԼԻՆԸ ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՈԳԵՇՆՉՈՂՆԵՐՆ ՈՒ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉՆԵՐՆ ԵՆ

1. Բոլշևիկյան պարտիայի և նրա առաջնորդներ Լենինի և Ստալինի ղեկավար դերը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի նախապատրաստման և կենսագործման գործում։

2. Լենինը և Ստալինը աշխարհում առաջին սովետական սոցիալիստական պետության ստեղծողներն են։

3. Կոմունիզմի կառուցման գործում սովետական ժողովրդի ձեռք բերած հաջողությունները։

4. Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի համաշխարհային պատմական նշանակությունը։

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Համ Կ(բ)Պ պատմության համառոտ դասընթաց: 7-րդ գլուխ, էջ 273—280։

**Ленин Владимир Ильич.** Краткий

очерк жизни и деятельности. Гл. IX. Госполитиздат. 1943 г., стр. 171—195.

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ: *Համառոտ կենսագրություն: էջ 63—74:*

Կոմունիստական պարտիայի և սովետական ժողովրդի մեծ առաջնորդը և ուսուցիչը: *Ի. Վ. Ստալինի ծննդյան 70-ամյակի առթիվ: «Ս. Հ.» 14 դեկտեմբերի 1949 թ.: «Ագիտատորի բլոկնոտ» 1949 թ. № 24, էջ 1—10:*

## II

## ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 33-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ ԴԻՄԱՎՈՐԵՆՔ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՆՈՐԱՆՈՐ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐՈՎ

*1. Կոմունիզմի կառուցման բոլոր ճակատներում սովետական ժողովրդի ընթացիկ տարում ձեռք բերած նշանավոր հաջողությունները:*

*2. Ավելի լայնորեն ծավալենք սոցիալիստական մրցությունը 1950 թվի տարեկան պլանը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 33-րդ տարեդարձին կատարելու համար:*

*3. Գյուղատնտեսական տարվա հաջող ավարտումը, պետության հանդեպ պարտավորությունները ժամկետից շուտ կատարելը՝ մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության ասպարեզի աշխատողների պատվի գործն է:*



*4. Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 33-րդ տարեդարձը դիմավորենք գիտության, տեխնիկայի, կուլտուրայի բնագավառում ձեռք բերած նորանոր հաջողություններով:*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Ի՞նչպես կազմակերպել մրցությունը: *Հայպետհրատ 1947 թ., առանձին բրոշյուրով, էջ 42—55:*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ. Մրցությունը և մասսաների աշխատանքային վերելքը: *Երկեր, 12-րդ հատոր, էջ 122—126:*

ՍՍՌՄ և Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1950 թվականի երկրորդ եռամսյակի պետական պլանների կատարման արդյունքները: *«Ս. Հ.»-ի 1950 թվի հուլիսի 29-ի և օգոստոսի 1-ի համարները:*

## III

## ԼԱՅՆՈՐԵՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԵԼ ԵՎ ՆԵՐԴՆԵԼ ԻՆԺԵՆԵՐ ԿՈՎԱԼՅՈՎԻ ՄԵԹՈԴԸ

*1. Սոցիալիստական արդյունաբերության բարձր արտադրողական պրիոմների ուսումնասիրության ամփոփման և բոլոր բանվորների մեջ ներդրման գործում ինժեներ Կո-*

վալյովի առաջարկության ունեցած ժողովրդա-տնտեսական նշանակությունը։

2. Ինժեներների և տեխնիկների ունեցած առաջատար դերը ստախանովականների աշխատանքային պրոգրեսիվ մեթոդների ուսումնասիրման տարածման գործում։

3. Բոլոր բանվորների որակավորման բարձրացումը աշխատանքի արտադրողականության հետագա աճի, արտադրանքի թողարկման և որակի բարելավման հիմքն է։

4. Ինչպես է մեր ձեռնարկությունում ներդրվում ինժեներ Ֆեոդոր Կովալյովի մեթոդը։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ՝ արտասանած ստախանովականների Համամիութենական առաջին խորհրդակցությանը։ *«Լենինիզմի հարցերը», 11-րդ հրատ., էջ 602—616։*

Նորարարների փորձը բոլոր բանվորներին։ *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1950 թ. սեպտեմբերի 6-ի համարում։*

Ուսումնասիրենք և լայնորեն տարածենք առաջավորների փորձը։ *«Ս. Հ.»-ի 1950 թ. սեպտեմբերի 6-ի 2-րդ էջը։*

Սովետական նորարար ինժեները։ *«Ս. Հ.»-ի 1950 սեպտեմբերի 14-ի առաջնորդողը։*



# IV

# ՄԻԱՎՈՐՎԱԾ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊԱԿԱՆ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԵՏԱԳԱ ԱՄՐԱՊՆԴՈՒՄԸ ԿՈԼՏՆՏԵՍԱԿԱՆՆԵՐԻ ԿՅԱՆՔԻ ՆՅՈՒԹԱԿԱՆ ԵՎ ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ՄԱԿԱՐԴԱԿԻ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ԳՐԱՎԱԿԱՆՆ Է

1. Վ. Ի. Լենինը և Ի. Վ. Ստալինը խոշոր կոլեկտիվ տնտեսության առավելությունների մասին։

2. Խոշորացած կոլտնտեսությունների հողաշինարարության անցկացումը, ցանքաշրջանառության ճիշտ ներդրումն ու կիրառումը՝ առատ բերքի և կոլտնտեսականների ունևոր կյանքի հիմքն է։

3. Անասնապահական խոշոր ֆերմաների ստեղծումը, հոտի ցեղի բարելավումը, անասնապահության աշխատատար պրոցեսների մեքենայացումը՝ անասնապահությունից կոլտնտեսության ստացած եկամուտների ավելացման ուղին է։

4. Աշխատանքային կարգապահության ամրապնդումը և կոլտնտեսականների աշխատանքի ճիշտ կազմակերպումը կոլտնտեսությունների հետագա խոշորացման և կոլտնտեսականների աշխօրերի արժեքը բարձրացնելու վճռական պայմանն է։

5. Յուրաքանչյուր կոլտնտեսությունում բարեկարգ ակումբի, գրադարանի և կինո-սարքավորման շինարարությունը՝ կոլտնտեսականների կուլտուրական կյանքի անհրաժեշտ պայմանն է։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ հարվածային կոլտնտեսականների Համամիութենական առաջին համագումարում: *«Լենինիզմի հարցերը», 11-րդ հրատ., էջ՝ 50—511։*

Մանր կոլտնտեսությունների խոշորացման առաջին արդյունքները: *«Ս. Հ.» 1950 թ. հուլիսի 25, 3-րդ էջ։*

Կոլտնտեսային կարգերի հիմնական օրենքը: *«Ս. Հ.»-ի 1950 թ., սեպտեմբերի 19-ի առաջնորդողը։*

## V

## ԿՈՐԵԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՅՔԱՐՆ ԻՐ ԱԶԱՏՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՆԿԱԽՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

*1. Ամերիկյան իմպերիալիզմը բոլոր ազատասեր ժողովուրդների ոխերիմ թշնամին է։*

*2. Ամերիկյան ագրեսորների բարբարոսությունները Կորեայում։*

*3. Ամերիկյան ինտերվենտների դեմ կորեական ժողովրդի՝ իր հայրենիքի ազատության և անկախության համար մղած հերոսական պայքարը։*

*4. Անվտանգության խորհրդում և Միավորված Ազգերի կազմակերպության Գլխավոր Ասամբլեայի 5-րդ սեսիայում ՍՍՌՄ դելեգացիայի պայքարը ամերիկյան ինտերվենտների ավազակություններին վերջ տալու և Կորեայից ԱՄՆ-ի զորքերը դուրս բերելու համար։*



*5. Ամերիկյան ագրեսորներին սանձահարելու վերաբերյալ աշխարհի հասարակայնության պահանջը հզոր օգնություն է կորեական ժողովրդին՝ ազատության և անկախության համար նրա մղած պայքարում։*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. Ստալինի պատասխանը պարոն Ներուի դիմումին: *«Ս. Հ.» 19 հուլիսի, 1950 թ.։*

ՍՍՌՄ Արտաքին գործերի մինիստրի տեղակալ Ա. Ա. Գրոմիկոյի հայտարարությունը Կորեայում ամերիկյան զինված ինտերվենցիայի մասին: *«Ս. Հ.» 5 հուլիսի, 1950 թ.։*

ՅԱ. Ա. Մալիկի ելույթը Անվտանգության խորհրդի նիստում: *«Ս. Հ.» 6 օգոստոսի 1950 թ.։*

Վերջ տալ Կորեայում ամերիկյան հանցագործ ինտերվենցիային: Կորեայի միասնական դեմոկրատական հայրենական ճակատի կենտրոնական կոմիտեի նախագահության կոմյունիկեն, *«Ս. Հ.» 2 սեպտեմբերի, 1950 թ.։*

Ամերիկյան ագրեսորների և Լի Սին Մանի կլիկի կողմից պատճառված վնասը և չարագործությունները հետաքննող ու որոշող միասնական դեմոկրատական հայրենական ճակատի հանձնաժողովի հաղորդագրությունները, *«Ս. Հ.» 1950 թ. օգոստոսի 25-ի և սեպտեմբերի 26-ի համարները։*

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.*

Դ. ԴԵՄԻՐՃՅԱՆ.— Ընտիր պատմվածքներ: *334 էջ, գինը 7 ռ. 80 կոպ.:*

Մ. ԱՐԱՁԻ.— Հաղթական ծիլեր: *204 էջ, գինը 4 ռ. 95 կոպ.:*

ՀՌԻՓՍԻՄԵ ՊՈՂՈՍՅԱՆ.— Բանաստեղծություններ: *136 էջ, գինը 4 ռ. 25 կոպ.:*

ԽԱՉԻԿ ԴԱՇՏԵՆՑ.— Խոդեդան: *266 էջ, գինը 7 ռ.:*

Վ. ՀՅՈՒԳՈ.— «Թշվառներ», (չորրորդ մաս): *410 էջ, գինը 13 ռ. 65 կոպ.:*

—⊙—


Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

ԳԻՆԸ 50 ԿՈՊ.

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б)
Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 19 1950 г.

*ՎՖ 05690* *Պատվեր № 716* *Տիրաժ 9.000*

*Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան,*
*Երևան*